## ԻՍՄԷԹ ԻՆԷՕՆԻԻ ՊՏՈՅՏՆԵՐԸ

Նախագահ Իսմէթ Ինէօնիւ կը շարունակէ իր քննական պտոյտները գաւառներու մէջ։ Իրեն կ'ընկերանան ոչ միայն Խալքի անդամները, այլ նաեւ՝ միւս կուսակցութեանց ներկայացուցիչները։ Իր վերջին ճառերէն մէկուն մէջ, Ինէօնիւ ակնարկութիւն ըրած է Խորհրդ. Միութեան գիտաւորութիւններուն՝ Թրքական հողերու մասին, եւ հրաւիրած է ժողովուրդը որ հեռատես ըլլայ։

Թուրք Նախագահը յայտարարած է նաեւ որ անհրաժեշտ է լայն ազատութիւններ տալ քաղաքական բոլոր կուսակցութեանց՝ մասնակցելու երկրին վարչութեան։ Բայց, չէ ըսած թէ՝ ինչ գործական քայլեր առնուած են այս ուղղութեամբ։

## ԹՈՒՐՔ ՍՊԱՅԱԿՈՅՏԻՆ ՊԵՏԸ

## ԱՄԵՐԻԿԱ ՀՐԱՒԻՐՈՒԱԾ

Անգարայէն պաշտօնապէս կը հաղորդեն թէ՝ Միաց. Նահանգներու կառավարութիւնը հրաւիրած է Թուրք սպայակոյտին պետ զօր. Սալիհ Օմուրթաքը այցելել Ամերիկա։ Զօրավարը Անգարայէն պիտի մեկնի Հոկտեմբերի առաջին շաբթուն մէջ, Թուրք բարձրաստիճան սպաներու ընկերակցութեամբ։

## ՌՈՒՍԻԱ ԿՐՆԱՅ ԱՐԵՒՄՏ. ԵՒՐՈՊԱՆ ԳՐԱՒԵԼ 48 ԺԱՄՈՒԱՆ ՄԷՋ

Ամերիկեան զինուորական թերթ մը, «Արմորտ Քէվըլրի Ժըրնէլ», կը գրէ թէ՝ ձեռնհաս շրջանակներու կարծիքին համաձայն, Խորհրդ. Ռուսիա կրնայ հաւանականօրէն արեւմտ. Եւրոպայի երկիրներուն վրայ յարձակիլ եւ գրաւել զանոնք 48 ժամուան մէջ, հակառակ անոր որ անգլիական եւ ամերիկեան բանակներ կան հոն։

«Սովետ զինուորները — կը գրէ յիշեալ թերթը — աշխարհի բոլոր երկիրներու բանակներէն աւելի լաւ պատրաստուած են կռուի։ Ամենալաւատեղեակ շրջանակներու կարծիքին նայելով, Ռուսիա այս պահուս Եւրոպայի մէջ ունի հրասայլերով զինուած տասը բանակ, իւրաքանչիւրը 50 հազարէն 60.000 զինուորէ բաղկացած։ Գալով ռուսական բանակներու ընդհանուր թիւին, անիկա 3ուկէս միլիոնէն 4միլիոնի չափ ըլլալ կը կարծուի։

# Զօր. Տը Կոլի ճառը

## ՀԱՄԱՅՆԱՎԱՐՆԵՐՈՒՆ ԵՒ ՆԵՐԿԱՅ ՎԱՐՉԱՁԵՒԻՆ ԴԷՄ

Քաղաքապետական քուէարկութեանց համար իր ընտրական պայքարէն սկսելով, զօր. տը Կոլ շաբաթ կէս օրէ վերջ, Լիոնի մէջ խօսեցաւ ճառ մը, կրկնեց իր ասկէ առաջ քանիցս ըրած յարձակումները համայնավարներուն դէմ եւ քննադատութիւնները կառավարական վարչութեանց մասին՝ սահմանադրական ներկայ օրէնքին անբաւականութեան պատճառով։

ԱՐՄԱՏԱԿԱՆ կուսակցութեան համաժողովի շաբաթ օրուան նիստին մէջ Էտուար Հէրիօ կուսակցութեան նախագահ վերընտրուեցաւ միաձայնութեամբ։ Այս ընտրութիւնը կը նկատուի դէպք մը, որ ապացոյց է թէ կուսակցութիւնը չափաւոր ուղղութեան պիտի հետեւի ընդհանուր քաղաքականութեան վերաբերեալ հարցերուն մէջ։



ԿԸ ՓՆՏՌՈՒԻ ՔՆԱՐԻԿ (ծնեալ. Թեւան Բաղդանեան որ 1935ին իր ամուսնոյն բժիշկ Վաղինակ Սարգսեանի հետ Թեհրանէն (Իրան) Ֆրանսա փոխադրուած է եւ պատերազմէն առաջվայլանս հաստատուած։ Տեղեկութիւն ունեցողներէն կը խնդրուի գրել՝ Mrs. D. Hovhannessianի, C. 173, Margih Basrah, (Irak):

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Դիւրացնելու համար իրենց վճարումները, կը յանձնարարենք դիմել մեր ընկերներուն եւ բարեկամներուն, զանազան վայրերու մէջ.—

ԱԼՖՈՐՎԻԼ՝ Բարթող Փափազեանին։
ՔԱՇԱՆ եւ ՊԱՆԵԷՕ՝ Մինաս Ալթունեանին։
ՇԱՎԻԼ եւ ՎԻՐՈՖԼԷՅ՝ Գրիգոր Կիւլեանի։
ՊՈՐՏՕ՝ Կարօ Տօնէրեանի։

ԼԻՈՆ՝ Թագւոր Այվազեանի։
ՏԷՍԻՆ՝ Վահան Հիւսեանի։
ԿՐԸՆՈՊԼԸ՝ Յ. Անտոնեանի։
ՎԻԷՆ՝ Պետրոս Մանուկեանի։
Ս. ԷԹԻԷՆ՝ Վարդան Խրիմեանի։
Ս. ՇԱՄՈՆ՝ Համբարձում Քուլաքսըզեանի։
ՎԱԼԱՆՍ՝ Եր. Ղուկասեանի։

ՄԱՐՍԷՅԼ ՔԱՂԱՔԸ՝ Ասատուր Քէօսէեանի, Տերիկեանի եւ Ա. Պետիկեանի։
ՊՈՒԼՎԱՌ ՕՍՍՕ՝ Տիգրան Ստեփանեանի։
Ս. ԺԵՐՈՄ՝ Գ. Կոփոյեանի։
ՊՈՄՈՆ՝ Յ. Նիկողոսեանի։
ՍԷՆ-ԼՈՒ՝ Գ. Մլոյեանի։
ՍԷՆԹ ԱՆ՝ Գրալեանի։
ՔԱՆ՝ Յ. Նշանեանի։
ՆԻՍ՝ Շ. Ջօտեանի։
ԼԱ ՍԻՈԹԱ.— Աճէմեան։

Հետզհետէ կը ծանուցանենք ուրիշ անուններ։

ԱՅՍ ԱՌԹԻՒ ՊԻՏԻ ԽՆԴՐԷԻՆՔ ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐԷՆ ՈՐ ԱՆՅԱՊԱՂ ՓԱԿԵՆ ԻՐԵՆՑ ՀԻՆ ՊԱՐՏՔԵՐԸ։

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

ՖՐ. ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ Իսիի մասնաճիւղը, Խրիմեան սրահի բացման հանդէսը կը կատարէ 28 Սեպտեմբեր, կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին։
Կը խօսի ընկ. ԷԼԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ
Գեղարուեստական բաժին։
ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է։



ԿՐԿԻՆ ԿԸ ՅԻՇԵՑՆԵՆՔ ԹԷ ԱՆՎՃԱՐ ԾԱՆՈՒՑՈՒՄՆԵՐԸ ՆԿԱՏԻ ՉԵՆ ԱՌՆՈՒԻՐ։




Le Gérant : A. NERCESSIAN
**Imprimerie DER-AGOPIAN, 17, rue Damesme - 13e**


# Յարգանքի երեկոյ

ԲԺԻՇԿ ՀԱՄՕ ՕՀԱՆՋԱՆԵԱՆԻ եւ ՆԻԿՈԼ ԱՂԲԱԼԵԱՆԻ յիշատակին։

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Եգիպտացի կոմիտէին կողմէ, այս շաբաթ օր, (27 Սեպտեմբեր) երեկոյեան ժամը 9ին, Սալ Ժէօկրաֆիի մէջ, 184 Bld. St. Germain, Paris:

Կը նախագահէ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ, պիտի խօսին ՏԻԿԻՆ ԷԼԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ եւ ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆ։

Մուտքը ազատ է։

★ Իսկ յաջորդ օրը կիրակի 28 Սեպտեմբեր, մասնաւոր հոգեհանգստեան արարողութիւն իրենց մահուան քառասունքին առթիւ, Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ, պատարագէն վերջ։

Հոգեհանգստեան արարողութիւնը կը սկսի ժամը 11.30ին։

– Կը հրաւիրուին իրենց յիշատակը յարգողները։

ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Մարսէյլի Շրջ. վարչութիւնը կարգով պիտի այցելէ ինը խումբերուն, իրենց անդամական ժողովի օրը, սովորական հաւաքատեղին, հետեւեալ օրերուն.—

ՍԷՆԹ ԱՆԹՈՒԱՆ.— Ուրբաթ 26 Սեպտ.:

Խումբերէն կը խնդրուի նկատի առնել վերոյիշեալ թուականները։

Հ. Յ. Դ. ՄԱՐՍԷՅԼԻ Շրջ. Կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ

Չորեքշ. 24 Սեպտ. ժամը 20.30ին Համազասպ խումբը։

Հինգշաբթի 25 Սեպտ. ժամը 20.30ին Արամ խումբը։

Շաբաթ 27 Սեպտ. ժամը 20.30ին Քեռի խումբը։
Կիր. 28 Սեպտ. ժամը 15ին Դումա ենթակոմիտէ։

Այս ժողովներուն ներկայ կ'ըլլան Շրջ. կոմիտէին ներկայացուցիչները։

Հ. Յ. Դ. Նոր Սերունդին Իսի լէ Մուլինոյի դասախօսութեանց շարքը կը սկսի յառաջիկայ երեքշաբթի 23 Սեպտեմբերին, Խրիմեան սրահին մէջ։

ՇԱՎԻԼԻ Արղութեան խումբի ժողովը այս շաբաթ երեկոյ ժամը 9ին, ընկեր Կիւլեանի բնակարանը։

ՇԱՎԻԼԷՆ ընկեր Գ. Պօղոսեան 200 ֆրանք կը նուիրէ տեղւոյն դպրոցին, Օր. ԻՍԿՈՒՀԻ ԿԻՒԼԵԱՆԻ ցաւալի մահուան առթիւ։

ՇԱՒԻԼԷՆ Կիւլեան ընտանիքը եւ իրենց պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք, անձամբ, նամակով, թերթով եւ կամ բարենպատակ նուիրատուութեամբ, վշտակից եղան, իրենց սիրելիին Օր. ԻՍԿՈՒՀԻ ԿԻՒԼԵԱՆԻ ցաւալի կորուստին առթիւ։

ԿԸ ՓՆՏՌՈՒԻ.— Տիկին Ա. Ղազարեան, վերջին բնակավայրը Լեհաստան Զամոյց, կը փնտռէ Սէնիկ Ղազարեանը ծնած 15 Սեպտեմբեր 1915ին, Լեհաստան, որմէ 1945 ապրիլ 20էն ի վեր տեղեկութիւն չունի։ Տեղեկացնել «Յառաջ»ի։

